# ԴԵՊԻ ՃԱՄԲԱՐ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Դու նորից ես մեզ սպասում,
Մեր զովասո՛ւն, ուրա՛խ ճամբար,
Շոգ է արդեն Երևանում,
Եվ քո գիրկն է բերում ճամփան:

— Եկե՜ք, մեր քա՛ջ ալպինիստներ,—
Ասին լեռները ձյունաթագ,—
Մենք գույնզգույն ծաղկազարդեր
Կփռենք ձեր ոտքերի տակ:

— Ի՛նձ մոտ եկեք, թանկագիննե՛ր,—
Զով անտառը մեղմիկ շրշաց,—
Ամբարել եմ ճոխ բարիքներ
Թավուտներում իմ ցողաթաց:

— Եկե՜ք, մեր լա՛վ բարեկամներ,—
Հավքերն ասին զվարթ, խնդուն,—
Համերգ կտանք մենք ձեզ համար
Առավոտից մինչ իրիկուն:

— Եկե՜ք, եկե՜ք,— կարկաչեցին
Պաղ-պաղպաջուն գետ ու գետակ,—
Որ ջրերում մեր թաթանցիկ
Դուք ձկների նման խայտաք:—

Իսկ արևը ասաց.— Եկե՛ք,
Կառնեմ իմ շեկ-վրձինը ես
Ու կնախշեմ այտերը ձեր
Կարմի՜ր-կարմի՜ր խնձորի պես:

Նկ. Ա. Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ





# ՑՈՒԼԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ



Ձյունը դժվարացնում էր քայլելը, մինչև կուրծքը ցուլը խրվել էր ձյան մեջ, արդեն մութն էր վրա հասնում, գոմը հեռու էր, և նա ոչ մի հոտ դեռ չէր առնում: Հովտաբերան ելնելիս՝ դեմառդեմ հանդիպեց ընդառաջ ելած գայլին: Գայլը կանգնեց, աչքերը հանգիստ ճպելով նայեց ցուլին, մտածեց, թե որ կողմըն անցնի, որպեսզի հարմար լինի այդ վիթխարի, սև, ամեհի ցուլին մոտենալու համար... Որոշեց նրան չջղայնացնել, գայլը մտադիր չէր փախչելու, ոչ էլ նրան վախեցնելու:

Ցուլը ժպտաց գայլին: Գայլը գիտեր, որ նա այս կողմերից չէ: Նա գյուղի մարդկանց ճանաչում էր քայլելու ձևից, կանգնելու ձևից, փայտ բռնելու ձևից, իսկ կենդանիներին՝ արածելու, վայելու, բայելու կամ բառաչելու ձևերից: Մյուս գյուղում մարդիկ և կենդանիները ուրիշ էին, բայց այս ցուլը ո՛չ այս, ո՛չ մյուս և ո՛չ էլ գայլային մի գիշերային վազքի հեռավորության վրա գտնվող գյուղերից էր, սա երկի մոլորված մի ցուլ էր:

Նա գիտեր, որ այդ ցուլին վատություն չի արել և իրավունք ուներ նրանից վատություն չսպասելու:

Գայլային երկայն թարթիչները թարթելով՝ արտահայտիչ նայում էր ժպտացող ցուլին, չէր հասկանում՝ ինչ է նա մտածում, ինչու չի վախենում իրենից: Իսկ ինքը ձանձրանում էր, շատ թրև եկավ գյուղի բոլորը, տեսնվա՞ծ բան է, որ գայլը օրը ցերեկով թրև գա գյուղի շուրջը: Բայց ինքն այդ օրին հասավ: Եթե ուտելու բան ճարեր, թերևս հինգ օր որջից չելներ, կամ յոթ օր: Բայց շների հաչոցից նողկալով՝ նա թրև եկավ գյուղի բոլորը, ահա ուզում է վերադառնալ իր երկիրը, բայց այս ցուլը հանդիպել է, արթնացնում է շատ հին հիշողություն, երբ մոր հետ հանդերում տեսան մի կով իր հորթուկի հետ:

Հորթուկը իրեն դուր եկավ, նրա ծուռ ու մուռ ոտքերն ու օրորուն քայլը դիտելիս՝ իր ծիծաղը գալիս էր, ուզում էր այդպես երկար պպզել ու նայել, ինչպես է այն մեծ կենդանու շուրջը հազիվ ոտքերը տեղաշարժելով դառնում այդ նորածին ծիծաղելի հորթուկը: Ինքը դեռ ձագ էր, այնքան գայլ չէր, որ հասկանար, թե ինչ մեծ երջանկության և դժբախտության են հանդիպել իրենք ընտանիքով: Մայրը հասկացրեց, որ պիտի հարձակվեն, ցանկանում էր ցույց տալ այդ որսի արվեստը, և նա ձագին տարավ շատ հեռու: Կովը հոտից արդեն անհանգստացել էր և աչքերը հառել մոտիկ տեղերում շարժվող կետերին, ականջները շեփորաձև դարձրած որսում էր ամեն մի շշուկ: Կովը մարդ էր սպասում, մութն ընկել էր, մարդ չկար, հուսահատությունն աճում էր:

Մայրը տարավ նրան շատ հեռու, շատ մեծ մի շրջան գործեցին կովի շուրջը, հողը հոտոտելով պտտվեցին այնքան, մինչև հասան իրենց նախկին ոտնահետքերին: Ճանապարհին մարդկային ոտնահետքեր հանդիպեցին, բայց հին էին, ամենանորերը առավոտվա էին, երևի կովի տերը փնտրելով անցել էր այդ տեղերով, բայց տիրոջ մարդկային խելքին չի հասել, որ ծնող կովը նստած է լինում, պետք է բարձրանալ բլրագագաթ ու նայել փոսավորությանը:

Մայր գայլը սկսեց շրջանը փոքրացնել, իսկ ինքը ձանձրանում էր. ե՞րբ պետք է կրկին տեսնի հորթուկին, ինքը կցանկանար խաղալ նրա հետ, փափուկ կծել նրա դունչը, ցատկել մեջքին: Իր հոգնածությունից հասկացավ, որ շատ ճանապարհ են անցել, հասկացավ նաև, որ մայրը սպասում է, որ մութն ընկնի: Բարձր բլուրներից մայրը շատ հեռվում տեսնում էր կովին ու հորթին, նրանց միշտ տեսողության մեջ էր պահում և կրկին դունչը հողին քսելով ու գայլաձագին ստիպելով նույնն անել՝ շարունակում էր երկրորդ, երրորդ շրջանը գործել: Այդքան տեղում, ուրեմն, շրջանից ներս մարդ չի անցել:

Մութը խտանում էր, օդը ցրտում, մայր գայլը սկսեց փորը քսել գետնին, իսկ ինքը գնում էր առաջվա պես: Մայրը խեթ նայեց նրան, ատամները չարությամբ բացեց, նրա ռունգերը դողացին, և նրա հազիվ լսելի ժնգժնգոցից գայլաձագի մազերը փշաքաղվեցին: Նա իսկույն փորը խփեց գետնին, ինքը ևս սկսեց գայլաքար շարժվել:

Մի տեղ ինքը թարմ հետք գտավ, շրջվեց, ետ գնաց ու կրկին եկավ թարմ հետքով: Այս և այն հոտի մեջ տարբերություն կար, սրանից գոմաղբի հոտ էր գալիս: Մայրը մոտ եկավ, իջեցրեց դունչը և իսկույն հասկացավ, որ հոտը մարդու չէ, անասունի չէ, ոչ էլ փարախի հոտ էր, կովերի, գոմշակովերի ու մեծ գոմի հոտ էր փչում այդ հետքերից:

Գայլաձագը տեսավ, որ մայրը մտածմունքի մեջ է, նույնիսկ թվաց անորոշ ինչ-որ սարսափ դողացրեց նրա բաշի մազերը: Նա հրամայեց պառկած մնալ ու ինքը վազեց այդ հետքով այնքան հեռու, որ գայլաձագը սկսեց վախենալ:

Մայր գայլը ետ եկավ ու գայլաձագը հասկացավ, որ մայրը նոր վճիռ է կայացրել: Նրանք եկած ուղղությունը կիսեցին որոշ չափ դեպի աջ և այսպես գնացին միաժամանակ, ապա այդ ուղղությունը ևս

կիսեցին կիսով դեպի աջ: Ու երբ բլրալանջը շրջանցեցին...

Ես սրան հիշում եմ, մտածեց գայլը, և ինքն էլ ժպտաց: Դա նա է, ասաց նա ինքն իրեն ու շարունակեց մտորել:

Ու երբ սարալանջը շրջանցելով կրկին սկսեցին իջնել՝ գայլաձագը իսկույն վերհիշեց տեղանքը. կովն ու իր հորթուկը առաջին հանդիպմանն այստեղ էին, հիմա ոչ ոք չկար: Ափսոսանքով ափսոսաց գայլաձագը և այն է՝ ցանկանում էր պպզել ու ոռնալ, հանկարծ նկատեց, որ մայրը հարձակման դիրք է առել: Նա զարմացավ և նույնպես լարվեց: Յոթ-ութ ոստյունից հետո նրանք տեսան կովը, հորթուկը: Կովը սկսեց վազել, փորը լխլխկացնելով նա վազում էր, երբեմն անճոռնի ձևերով շրջվում ետ, նայում իրենց: Լայնացած նրա աչքերը լի էին կովային սարսափով, միայն հորթուկը ոչինչ չէր հասկանում, ճանապարհին կանգ էր առնում և նրա ծանր գլուխը հազիվ էր մնում հորիզոնական: Կովն էլ էր իրենցը, հորթուկն էլ: Երբ գայլաձագը համարձակ առաջ նետվեց, մայրը նրան ետ չպահեց, որովհետև միանգամից երևաց, որ դա վախկոտ, լխլխկան կով է, առաջին ծինն է, վախից, ցավից, անսովորությունից, գոմի դուռը բաց էր եղել, դուրս էր եկել հանդ, կորել:

Գայլաձագը գետնին քսվելով գնաց, համարյա ստվերի չափ տափակել, հողին էր հավասարվել: Կովը բնազդով անսխալ չափել էր վտանգի խորությունը և ապրելու օրենքը նրան թելադրել էր ամենախելացին, միակ ելքը: Գայլաձագը իր մորը տեսավ հակառակ կողմում, կովը դրանից շփոթվեց: Մայր գայլը, փշաքաղ, ատամները բաց, լորձունքը հողին թափելով, որովհետև ատամների տակ արդեն կանխաճաշակում էր փափուկ ու տաք մարմնի հպումը, սպառնագին մոտենում էր: Կովի կովային սարսափը նրան ավելի էր գայլացրել, թանձր մթությունը տխմարացնելու չափ ուրախացրել էր նրան, ամեն ինչ չափազանց հաջող էր, ու գայլաձագը հանկարծ այն տեսավ, որ տեղից պոկվելով՝ այդ լխլխկան կենդանին խոյացավ իր վրա: Հազիվ ցատկեց մի կողմ, զգալով՝ ինչպես մրրկի պես նա անցավ իր կողքով և նրա եղջյուրները խրվեցին մացառուտի մեջ: Կրկին մոլեգնաբար նա ետ ցատկեց, վազեց դեպի իր հորթուկը, որը բախվեց մորը և թավալվեց գետնին: Կովը չորս ոտքերով պինդ կանգնել էր իր ձագուկի կողքին՝ կռվելու, մաքառելու, իր հորթուկի կյանքը պահպանելու համար սեփական կյանքը զոհաբերելու վճռականությամբ, չնայած սարսափից չէր կարողանում իրեն իշխել, գարշահոտություն տարածելով ցրրկում էր անընդհատ: Բայց զզվելի չէր: Ծիծաղելի էր, սակայն հարգանք էր հարուցում: Իսկ իր մայրը գազանի ամբողջ զարհուրելիությամբ ահավոր էր ու սքանչելի: Գայլաձագը տեսավ, ինչպես թփի ետևում

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



մայրը պատրաստվում է մահացու ցատկի, հպարտությամբ սպասում էր, թե ինչպես իր մայրը պիտի սպանի նրա մորը:

Խշրտոց լսվեց, մոտակա մացառուտը ջարդելով՝ ինչ-որ բան վիթխարի թափով դեպի իրենց էր սլանում, գետինը ցնցվում էր նրա տեղաշարժից, խշրտոցը մոտենալով դառնում էր հսկայական ծառաջարդոցի աղմուկ ու, քիչ անց, խավարից դուրս նետվեց ինչ-որ սև, ահագին զանգված, նրա փնչոցից երկի գետնի վրա փոսեր առաջացան:

Մի ակնթարթում մոր սպառնական կեցվածքը կոտրվեց, մեջքը կորացավ, կաղալով իրեն նետեց մի կողմ, և ամեհի ու ահիպարանոց մի ցուլ թփերը փշրելով, գլուխը կախ, հսկա եղջյուրները խոնարհած, ինչպես մի սև հրդեհ սլացավ նրա վրա:

Մառախուղ էր, անձրև էր մաղում, գայլաձագն այդպիսի բան չէր տեսել, կարկամել, մնացել էր տեղում գամված, ոտքերն ասես խրվել էին հողի մեջ, չէին տեղաշարժվում: Նա տեսավ նաև, ինչպես ցուլի եղջյուրները մխրճվեցին հողի մեջ, ճիշտ այն տեղում, ուր քիչ առաջ մայրն էր պատրաստվում ցատկի:

Ցուլը գլուխը վեր քաշեց և արմատախիլ թուփը հսկա մի հողաբլրի հետ մնաց նրա եղջյուրներին: Եվ այդ թուփն ու հողաբլուրը գլխին՝ նա դարձավ դեպի իրեն և նրա ամեն ոտքը գետնին խփելիս խրվում էր գետնի մեջ: Միայն մեկ սմբակով նա կարող էր իրեն գամել, խրել հողի մեջ: Այդ ծառն էլ եղջյուրներին՝ ցուլը սիրտ պայթեցնելու չափ ահավոր էր:

Գայլաձագը պոկվեց ու սլացավ լանջով, այնպիսի թռիչքներ էր անում, որ հետագայում զարմանք էր պատճառում իրեն: Սարալանջից մյուս կողմ անցնելիս, ընդունված կարգ էր, գայլը պետք է ետ նայի. դաշտում, կովի շուրջը պտույտներ էր անում այդ ամեհի կենդանին, գլուխը արմատների ու հողակոշտերի մեջ կորած էր, և նրա սմբակների հարվածը այդքան հեռավորությունից անգամ ցնցում էր գետինը:

Հեռվում մայր ու որդի գտան իրար, մինչև որջը գնացին լուռ: Նրա համար անհասկանալի էր, ինչու փախուստ տալիս մայրը կաղում էր, նա կաղ գայլ չէր: Հետագայում շատ դեպքեր եղան, հասկացավ, որ կաղում են վախից, և ցուլի աչքին հիվանդ, անօգնական գայլ երևալու համար էր, որ մայրը կաղալով ու կաղկանձելով փախուստ տվեց, որովհետև անասունը պետք է անասունին խղճա:

Այն հորթը այս ցուլն էր դարձել, տարել ինչ-որ տեղ երևի վաճառել էին նրան, և նա այժմ հիշողությամբ վերադառնում էր հին վայրերը և այս հանդիպումը ոչ մեկին չէր պարտավորեցնում, դրա համար էր հավանաբար ժպտում ցուլը: Ինքն էլ այլևս գայլաձագ չէր, այլ հասուն, միայնակ որսի ելնող գայլ էր և համարյա միմյանց կողի քսվելով՝ նրանք անցան իրար մոտով:

Կողքով անցնելիս ցուլը մի քիչ շոյեց նրան, և գայլը զգաց դա: Գիշերվա այն ցուլի նման սա ևս վիթխարի, ահազդու մի կենդանի էր, և գայլը հիշեց իր միամիտ մտքերը՝ նրա դունչը փափուկ կծելու մասին:



# ԶՐՈՒՅՑ ՀՈՐ ՀԵՏ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Կոմբայնավար է
Հրայրի հայրը.
Գործի գնալիս,
Տղան մի անգամ
Մոտիկ է վազում.
— Ես էլ եմ գալիս:
— Ինչո՞ւ տանեմ քեզ,
Ի՞նչ պիտի անես,—
Հարցնում է հայրը:
— Հասկ կհավաքեմ,—
Պատասխանում է
Որդին՝ Հրայրը:
— Քանի՞ հասկ պիտի
Հավաքես արտից,—
Նեղում է հայրը,—
Եվ պատասխանը
Գտնում է իսկույն
Ճարպիկ Հրայրը.
— Ուզեմ մի գրպան,—
Ասում է տղան,—
Տա՛ր, հայրի՛կ, տա՛ր ինձ...—
Հայրը զարմանում,
Հոգոց է հանում
Ու ասում նորից.
— Հրա՛յր, դա քիչ է,
Մի գրպանն ի՞նչ է,
Ինչո՞ւ մի գրպան...—
Իսկ որդին ժպտում,
Հնարք գտնում,
Ասում է նրան.
— Չգիտե՞ս ինչու...
Դու չես ճանաչում
Վարպետ հնձողին.
Դու, որ չավ հնձես,
Էլ ո՞րծ կթողնես
Հասկ հավաքողին:

ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ






# ՔԵԶ ՀԵՏ, ՔԵԶՆԻՑ ԱՆԲԱԺԱՆ

Ես ճանաչում եմ մի պիոների, որ հիսուն տարեկան է, բայց երբեք չի բաժանվել կարմիր վզկապից, միշտ եղել է քեզ հետ, քեզնից անբաժան: Պատանեկան խանդավառությամբ նա ողջունել է պիոներական բոլոր սերունդներին և ջերմությամբ ասել.

— Մի՛շտ պատրաստ:

Նա քո բարեկամն է, բոլորի խորհրդատուն և ազնիվ ուսուցիչը: Դու արդեն գուշակեցիր, թե ում մասին է խոսքը: Դե, իհարկե, քո սիրելի թերթի՝ «Պիոներ-կանչի»:

Ուզո՞ւմ ես իմանալ, թե ինչպես է բաբախել հանրապետության պիոներական կազմակերպության սիրտը նրա ծննդյան օրից սկսած, թերթի՛ր «Պիոներ-կանչի» էջերը: «Պիոներ-կանչը» մի կենդանի, գեղեցիկ պատմություն է, որ սկիզբ է առնում պատանի կոմունարների նշանաբանով.

— Փոխարինողներին փոխարինողներ են գալիս:

«Պիոներ-կանչի» ծննդյան օրը համարվում է 1925 թվականի հունիսի 4-ը: Առաջին յոթ համարները լույս են տեսել «Պիոներ-դեկ» անունով, բաղկացած ութ փոքրիկ էջերից, ընդամենը 4000 օրինակ տպաքանակով: Իսկ հիմա «Պիոներ-կանչի» տպաքանակը 250 հազար է:

Թերթի՛ր նրա տարեգրության էջերը, և քո առաջ կբացվեն պիոներական տասնամյակների դժվարին ու լուսավոր ճանապարհները: Այդ ճանապարհներին, հենց առաջին տարիներից պատանի թղթակիցների խանդավառ ջոկատի հետ միասին թերթի մշտական բարեկամներն են եղել Ստեփան Զորյանը, Մկրտիչ Արմենը, Նաիրի Զարյանը, Գեղամ Սարյանը, մանուկների սիրելի գրողներ Խնկո-Ապերը, Հայրապետ Հայրապետյանը: Նրա էջերում միշտ իրենց բարի խորհուրդներով երեխաների հետ զրուցել են Ավետիք Իսահակյանը, Դերենիկ Դեմիրճյանը, Մարտիրոս Սարյանը: Տասնամյակներ շարունակ թերթի էջերից երեխաներին գիտության զարմանահրաշ աշխարհն են առաջնորդել Վիկտոր Համբարձումյանը, Սերգեյ Մերգելյանը, Գագիկ Դավթյանը, ուրիշ անվանի գիտնականներ: «Պիոներ-կանչի» հետ անխախտ բարեկամությամբ են կապված Հովհաննես Բաղրամյանը, Նվեր Սաֆարյանը, Ասքանազ Կարապետյանը...

30-ական թվականների շատ թղթակցությունների տակ ստորագրված է. «Պատկոր Նագուշ»: Նախկին պատանի թղթակից Նագուշ Հարությունյանն այժմ նշանավոր գիտնական է, ակադեմիկոս: Կրուպսկայայի անվան դպրոցի աշակերտուհի Սիլվայի առաջին բանաստեղծությունները «Պիոներ-կանչում» են տպագրվել: Նախկին Պատկոր Սիլվան այժմ սովետահայ անվանի բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկյանն





# Ա Մ Ա Ռ

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*

Երկնի ծովում՝
Սուզված լեռներ,
Կանաչ լանջին՝
Ջով անտառներ,
Գետ ու առվակ
Քաղցրակարկաչ,
Դաշտերի մեջ՝
Պուտ-պուտ կակաչ:

Ծորնի արտեր
Ալեծփուն,
Ժայռի գլխին՝
Արծվի բույն,
Ժայռածերպին՝
Վայրի վարդեր:
Արև մի բուռ,
Երկինք կապույտ

*ՆԿ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

Ու գեղգեղող
Լոր ու արտույտ...
Ճամբարային
Ծփուն դրոշ,
Ծիծաղ ու երգ,
Գույներ պայծառ...
Ողջը մեկտեղ՝
Կարմիր ամառ...

# Թ Ի Թ Ե Ռ Ը

*ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ*

Թիթեռնիկը
Առաջ ոչ թե թիթեռնիկ էր,
Այլ ծաղիկ էր՝ ժայռին թառած:

Մի օր սակայն, երբ սևակնած
Գարնան ամպը ահեղ գոռաց,
Դողաց ահից ծաղիկը մեր.
— Ունենայի՜ եթե թևեր...—

Այսքանն ասաց ու այդ պահին
Թևեր առավ:
Ու այդ պահին թևեր առած՝
Թիթեռ դառավ:

Թևեր առել,
Հեռուն թռել,
Բայց կարոտը իր քույրերի՝
Ծաղկանց հանդեպ դեռ չի առել...

---

է: Եվ այսպես, տասնյակ անուններ:

Թերթի տպագրությունն ընդհատեց Մեծ Հայրենականը: «Պիոներ-կանչի» հերթական համարը լույս չտեսավ: Խմբագրության դռան վրա գրված էր. «Բոլորը մեկնել են ռազմաճակատ»:

«Պիոներ-կանչը» վերստին լույս տեսավ 1946 թըվականի մայիսի 8-ին և եռանդով շարունակեց իր մեծ գործը, հայրենանվեր նախաձեռնություններով նոր գրոհների տարավ ընթերցողների հոծ բանակին:

Նա երեխաներին կոչ արեց՝ մետաղի ջարդոն հավաքել և 300 վերամբարձ կռունկներ ուղարկեց հայրենիքի հարվածային կառույցներին, Հայաստանի անտառներում հարյուր հազարավոր վայրի ծառերին պատվաստներ արավ, ճամբարներին պարգևեց գեղեցիկ անուններ՝ «Փարվանա», «Զանգակ», «Մրրկահավ», «Նաիրի»... Հեռավոր ափերում ապրող հայ երեխաներից կարոտի «ծիծեռնակներ» բերեց հայրենիք. ծավալեց պատանի հայրենասերների «Վարդանականներ» շարժումը, անցկացրեց «Ի՞նչ գիտես տիեզերքի մասին», «Ինչպիսի՞ն է իմ հայրենիքը՝ Սովետական Հայաստանը» և ուրիշ մրցանակաբաշխություններ: Թերթը «Արտուտիկ», «Հոկտեմբերիկ» «Թիվ-թագավոր», «Մարսիկ» հանրահայտ էջերով, «Լապտերիկ», «Ճեփոր», «Մոլորակ», «Ուղեկից», «Յուպիտեր» և այլ ակումբներով սրտաբաց խոսեց ձեզ հետ, պատասխան տալով ձեզ հուզող բազմաթիվ հարցերին:

Այսօր «Պիոներ-կանչ»—50» տիեզերանավը ճանապարհորդում է պիոներական տարեգրության էջերով, վարէջք կատարում պիոներական «օդանավակայաններում», պատմում ձեր հրաշալի գործերի ու նախաձեռնությունների մասին: Մեծ հաղթանակի 30-ամյակին նվիրված «30 համազարկ» օպերացիային մասնակցեցին համարյա բոլոր դրուժինաներն ու ջոկատները:

Թերթի երգիծական հանրահայտ հերոսներ Կոկոնի, Կատոնի, Քաջիկի, Վռամ Ծուլոյանի, Շտապիկի գործն է շարունակում զվարճալի, սրամիտ, թերությունները ու ստվերները անխնա խարազանող Հումորիկը:

Արդեն 12 տարի է, որ «Պիոներ-կանչում» գործում է «Շավիղ» պատանեկան խմբագրությունը: «Շավիղին» դուք պարբերաբար հանդիպում եք թերթի էջերում: Իսկ գիտե՞ք, թե ովքեր են հրատարակում այն. ձեր հասակակիցները, մեր պատանի թղթակիցները:

Դժվար է մեկ առ մեկ թվել հոբելյարի կենսագրության նշանավոր էջերը, նրա նախաձեռնություններն ու բարի գործերը: Հիսուն տարի շարունակ նա սրտաբաց խոսել է հանրապետության պիոներական սերունդների հետ:

«Պիոներ-կանչի» 50-ամյակը տոնն է բոլոր-բոլոր մարդկանց՝ և՛ մեծերի, և՛ փոքրերի, որովհետև նրանց մանկության ու պատանեկության հավատարիմ ուղեկիցն է հանդիսանում:

*ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*




# ՋՈՒԹԱԿԸ

*ՅՈՒՐԻ ՅԱԿՈՎԼԵՎ*

Երբևէ կանգնե՞լ եք երաժշտական ուսումնարանի պատուհանների տակ, թաց ասֆալտին, որի վրա արտացոլվում են մեծ, ուղղանկյուն պատուհանների լույսերը: Գալիս է անտեսանելի, բարակ անձրև: Մարդիկ շտապում են: Առկայծում ու միանգամից թանձր մշուշի մեջ մարում են մեքենաների լույսերը: Իսկ տոնականորեն լուսավորված երաժշտական ուսումնարանի պատուհաններից հոսում են տարբեր գործիքներից ծնվող հնչյունները, շենքը նմանվում է նվագախմբի, որը նախահամերգային տպավորություն է ստեղծում:

Մի՛ շտապեք հեռանալ: Ուշադրություն մի՛ դարձրեք անձրևին: Հիմա ինչ-որ բան է կատարվելու: Կարող է պատահել բացվեն պատուհանները, և դուք տեսնեք բազմաթիվ տղաների ջութակները, ֆլեյտաները, թմբուկները: Եվ կարող է պատահել, որ բացվեն դռները ու անձրևի տակ դուրս գա մի մեծ նվագախումբ: Նվագախումբը կանցնի քաղաքով, թեև թափվում է անձրևը և ոտքերի տակ ջրափոսեր են: Իսկ դուք արագացրե՛ք ձեր քայլերը, որպեսզի ետ չմնաք նվագող գալարափողերից:

Տղան դուրս եկավ հացաբուլկեղենի խանութից: Անձրևից չթրջելու համար նա հացը թաքցրել էր վերարկուի տակ: Հացը տաք էր և հաճելիորեն ջերմացնում էր. նա ոչ թե չոր, սև աղյուս էր, այլ, ասես, շնչող կենդանի արարած:

Փողոցը մարդաշատ էր: Մարդիկ ձգտում էին ավելի շուտ տուն հասնել: Իսկ տղան անցուդարձ էր անում երաժշտական ուսումնարանի պատուհանների տակ, և հացը ջերմացնում էր նրան:

Ամեն պատուհան իր ձայնն ունի, իր կյանքը: Տղան լսեց մի ձայն, որ նման էր խոր հոգոցի: Ինչ-որ

---

*ՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ*

## ԴԵՐՎԻՇՆ ՈՒ ՓԱՇԱՆ

*Մի դերվիշ մտավ փաշայի մոտ, ասաց.*

*— Փաշա՛, հոգնել եմ հետիոտըն թափառելուց: Եկել եմ քեզնից մի ձի խնդրեմ: Կտաս՝ լավ, չես տա՝ ալլահը քեզ հետ:*

*Փաշան հրամայեց ախոռապետին.*

*— Դերվիշ բաբային տարեք ախոռ: Այնտեղ մի ձի կա՝ աչքը քոռ, ոտքը կաղ, կողերը ցից: Տվե՛ք իրեն: Տարավ՝ լավ, չտարավ՝ ալլահն իր հետ:*



## ՆԿԱՐԻՉՆ ՈՒ ԳԵՂՋՈՒԿԸ

*Երիտասարդ մի նկարիչ բացեց իր գործերի ցուցահանդեսը, ծպտված շրջեց ժողովրդի մեջ, որ լսի, իմանա, թե ինչ են ասում մարդիկ, ինչպես են գնահատում իր աշխատանքը:*

*Մի անգամ էլ բնանկարներից մեկի առաջ տեսավ գեղջուկ մի մարդ՝ փափախը գլխին, ոտքերին՝ տրեխներ, կանգնել, բարձր-բարձր ծիծաղում է:*

*Նկարիչը՝ խիստ հետաքրքրված, մոտեցավ գեղջուկին.*

*— Քեզ ի՞նչը դուր չի գալիս, եղբա՛յր: Ինչո՞ւ ես այդպես ծիծաղում:*

*— Չխնդամ՝ բա ի՞նչ անեմ, տղա՛ ջան,— ասաց գեղջուկը:— Էս տնաշենի նկարիչը ծտին նստեցրել է ցորենի հասկի վրա, հասկը իսկի չի էլ կռացել: Ի՞նչ է, որ ծիտ է, քաշ չունի՞:*

*Նկարիչը իսկույն պատից իջեցրեց կտավը և տարավ տուն:*

## ԳԵՂԵՑԻԿ ԱՂՋԻԿԸ

*Մի մուրացկան մոտեցավ երկու գեղեցիկ աղջիկների, ողորմություն խնդրեց:*

*Աղջիկներից մեկն ասաց.*

*— Եթե ասես՝ մեզնից որն է ավելի գեղեցիկ, քեզ փող կտամ:*

*— Լավ,— ասաց մուրացկանը,— կասեմ:*

*Մյուս աղջիկը, առանց խոսքի, փողը հանեց և տվեց մուրացկանին:*

*Մուրացկանն ասաց.*

*— Գեղեցիկը նա է, ով կարեկցում է կարոտյալին:*



մեկը մեծ բաս ունեցող զալարափող էր նվագում: Հարևան պատուհանից լսվեց անշտապ գամման՝ նըման անտառային տոտափի: Երևում էր, փոքրիկ, անվարժ մի ձեռք առաջին անգամ էր սահում ստեղների վրայով: Նրա կողքին «ճչում» էր բալալը: Նվագողը հավաքեց նոտաները, որոնք կարծես կսպանակի վրա լինեին, և հետո կտրուկ թողեց:

Տղան անցավ գալարափողերի ու դաշնամուրի մոտով: Տղային չհետաքրքրեց նաև բալալը. նա որոնում էր ջութակը և գտավ: Ջութակի ձայնը լսվում էր երկրորդ հարկի պատուհանից: Տղան ականջ դրեց: Ջութակը լաց էր լինում ու ծիծաղում: Այն կարծես թռչում էր դեպի երկինք և հոգնած իջնում երկրի վրա:

Ինչ-որ մեկը անսպասելիորեն ձեռքը դրեց տղայի ուսին: Նա սթափվեց ու ետ նայեց: Մայթին կանգնած էր կլորադեմ մի աղջիկ՝ հաստ ու կարճ հյուսքերով: Աղջիկը ձեռքում բռնել էր հսկայական պատյանով թավջութակը: Այն թաց էր ու փայլում էր:

— Նորի՞ց եք սպասում, — հարցրեց աղջիկը:

Նրա ձայնը տղային շեղեց ջութակից: Տղան անբավականությամբ խոժոռվեց ու քրթմնջաց.

— Ես ոչ ոքի չեմ սպասում:

— Ճիշտ չէ, — ասաց աղջիկը, — ինչո՞ւ պետք է կանգնես անձրևի տակ, եթե ոչ ոքի չես սպասում:

— Ես հացի էի գնացել, — պատասխանեց տըղան, — ահա՛, տեսնո՞ւմ ես... հացը:

Աղջիկն ուշադրություն չդարձրեց: Նա ասաց.

— Դու Դիանային ես սպասում:

— Ո՛չ:

Տղայի ձայնի մեջ հեգնանք կար, բայց կլորադեմ աղջիկը կրկնեց.

— Դու միշտ Դիանային ես սպասում:

Մեծ, սև պատյանով թավջութակը տղային թվաց փքված ճամպրուկ: Տղայի մեջ ցանկություն առաջացավ այդ կլորադեմի ձեռքից թռցնել թավջութակը և նետել ջրափոսի մեջ: Բայց աղջիկը ժամանակին լռեց: Նա բարյացակամորեն նայում էր տղային: Տըղան չգիտեր՝ ինչ անել և ձեռքով հպվեց տաք հացին:

— Գնանք, — ասաց աղջիկը, — ինչո՞ւ թրջվենք:

Նրանք քայլեցին կողք-կողքի: Լույսերով ողողված երաժշտական ուսումնարանի շենքը ասես ձուլվել էր անձրևին: Աղջիկը, մի քանի քայլ հետո, գործիքը մեկնեց տղային.

— Տա՛ր, ծանր է:

Այդ մեծ, ճամպրուկի բռնակ ունեցող առարկան տղան վերցրեց ձեռքը և պարտաճանաչորեն իրեն վզգաց անհարմար վիճակում: Թվաց, թե ամբողջ քաղաքը գիտի, որ ինքը ուզում է ջութակ տանել, բայց տանում է թավջութակ: Թավջութակը հասնում էր մինչև ոտքերի ծայրը, ապա թրջվում ջրհորդանից թափվող ջրով:

— Վա՜յ, պզո՛ւկ, գործիքը թանկ արժի, — անհանգստացավ աղջիկն ու ավելացրեց, — հաճախ եմ քեզ տեսնում երաժշտական ուսումնարանի մոտ:

— Ես հացի եմ գնում, — պատասխանեց տղան:

— Ճիշտ է, այո՛, — համաձայնվեց աղջիկը: — Գիտե՞ս ինչ. գնանք մեզ մոտ: Ես քեզ համար ցայգերգ կնվագեմ: Մենք թեյ էլ կխմենք:

Տղան չպատասխանեց: Նա հանկարծ մտածեց՝ ինչքան լավ կլիներ, եթե այս կլորադեմ աղջկա փոխարեն Դիանան քայլեր իր կողքից ու ասեր.



նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

— Ես քեզ համար ցայգերգ կնվագեմ, մենք թեյ էլ կխմենք:

Նա թեթև կտաներ Դիանայի ջութակը, նույնիսկ այն դեպքում, եթե թնդանոթից ծանր լիներ: Նա ուրախությամբ կլսեր տխուր ցայգերգը և կխմեր թեյ:

Անձրևը չէր դադարել: Անձրևը ցողել էր լապտերները, շենքերը, ծառերի սիլուետները, փողոցում առարկաները կորցրել էին իրենց բնական տեսքը: Քաղաքը տանջվում էր անձրևից:

Իսկ ինչո՞ւ ինքը պետք է կանգներ երաժշտա-

# ԿԱՆՈՍՍԱ ԳՆԱԼ

*Սա դարձյալ հեքիաթ չէ, այլ պատմական եղելություն:*

*Գերմանական կայսր Հենրիխ Չորրորդը, որ ապրել է մեզնից մոտ ինն հարյուր տարի առաջ, ողջ կյանքում հակամարտության մեջ է եղել կաթոլիկ եկեղեցու գլխավորի՝ Հռոմի Գրիգոր յոթերորդ պապի հետ: Կայսրը թշնամուն հարվածում էր զենքով, պապը՝ երբեմնի ստացած սոսկալի իշխանությամբ: Նա իրավունք ուներ ուզած մարդուն բանադրելու, իսկ բանադրվածը, եթե նույնիսկ կայսր էր, զրկվում էր մարդկային բոլոր իրավունքներից. ոչ ոք իրավունք չուներ խոսելու նրա հետ, անգամ ուտելիք մատուցելու, եթե նույնիսկ բանադրվածը մեռներ քաղցից:*

*Կռիվն անհավասար էր. 1077 թվականին կայսրը գնում է իտալական Կանոսսա ամրոցը, ուր ապրում էր պապը և մի քանի օր ցնցոտիներով, բոկոտն կանգնում ձյան մեջ, ներումն աղերսելով նրանից: Դարեր են անցել: Բայց դեռ հիմա էլ, երբ տեսնում են հաղթողի առաջ նվաստացած գոռոզամիտին, որի հպարտությունը կոտրվել է, ասում են. «Այնուամենայնիվ, նա գնաց Կանոսսա»:*



# ՄԵԴՈՒԶԱՅԻ ՀԱՅԱՑՔԸ



*— Մեդուզա, գիտեմ, գիտեմ: Դրանք դոնդողակերպ, զանգակի նման ծովային կենդանիներ են: Գեղեցիկ են, բայց խիստ այրում են:*

*Ճիշտ է, իսկական մեդուզաներն այդպիսին են: Բայց, ահա, հին հույների հեքիաթային Մեդուզան շատ ավելի սարսափելի էր: Նրանք երեք քույր էին՝ Գորգոնները, հրեշներ՝ գազանի ականջներով, պղնձե սմբակներով և մազերի փոխարեն՝ գլուխների վրա գալարվող օձերով:*

*Երեք քույրերից ամենից սարսափելին Մեդուզան էր (ավելի ճիշտ՝ Մեդուսան): Նրա դեմքին նայողը քարանում էր: Նույնիսկ մեծանուն հերոս Պերսևսը հաղթեց նրան ոչ թե ուժով ու քաջությամբ, այլ խո-*

կան ուսումնարանի պատուհանների տակ և սպասեր Դիանային: Նրա համար միևնույն է՝ ինքը կկանգնի թե չի կանգնի, ինքը կա թե չկա: Իսկ այս կորադեմն ինքն է խոսեցնում և չի ծեծանում, հրավիրում է ցույցերդ ցանցը և թել խմելու: Ավելին՝ տղային վստահում է քաղաքությունը, որը շատ թանկ արժի:

Հանկարծ տղան ցանկացավ ուղեկցուհուն ինչ-որ հաճելի բան ասել.

— Հաց ուտո՞ւմ ես... տաք է:

Աղջիկը գլխով արեց:

— Ինչ համե՞ղ է, — ասաց նա:

Տղան գոհ մնաց, որ հացը դուր եկավ աղջկան:

— Դու երաժշտություն սիրո՞ւմ ես, — հարցրեց աղջիկը:

Տղան բացասաբար շարժեց գլուխը:

— Դա մեծ թերություն է, — ընդգծեց աղջիկը, — բայց ոչինչ, ես քեզ կսովորեցնեմ սիրել երաժշտություն: Եղա՞վ:

— Եղա՛վ:

Ամեն ինչ իր տեղն ընկավ: Կորադեմը տղայի համար արդեն առաջվա կորադեմը չէր, և, ընդհակառակը, նա բարի աղջիկ է, այնպիսին, ինչպիսին պետք է լինել. չէ՞ որ նա տղային հեռացրեց անձրևից, անհրապույր ջութակից և անտարբեր Դիանայից: Նա

րամանկությամբ. հարվածը հասցնելիս հերոսը նայում էր ոչ թե նրա դեմքին, այլ արտացոլմանը պղնձակուռ վահանի վրա: Հետո այդ վահանի վրա նա կապեց սպանված Մեդուզայի գլուխը: Նույնիսկ մեռած Մեդուզան քարացնում էր նրանց, ում վրա ընկնում էր նրա հայացքը:

Եթե որևէ մեկի մասին լսեք, որ նա «մեդուզայի հայացք» ունի, նախապես պատրաստ եղեք ոչ հաճելի տպավորության, քարանալը՝ չեք քարանա, բայց անծանոթը դժվար թե դուր գա ձեզ:

## ՓԱՌՔԻ ԶԵՆԻԹՈՒՄ

Արաբերեն լեզվում կա մի բառ՝ «զեմթ», որ նշանակում է «ճանապարհ»: Սրանից էլ ծագել է «զենիթ» բառը:

Զենիթը երկնակամարում, ուղիղ մեր գլխավերևը գտնվող կետն է՝ «երկնի ամենավերին ծայրը»: Այս պատճառով էլ ինքնաթիռներին կրակող հրանոթները կոչվում են «զենիթային»: Ուրեմն և հասկանալի է, թե ինչու այն մարդու մասին, որի հռչակը հասել է բարձրակետին, ասում են. «Նա փառքի զենիթում է»:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



## ԹՌՉՆԱԿ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

— Թռչնա՛կ, փոքրի՛կ
թռչնակ,
Քո բույնի մեջ՝ ծառին,
Կուչ ես եկել մենակ,
Նայում ես ամպերին,
Դու չե՞ս տխրում, թռչնա՛կ:

— Ծառի բարձր ճյուղքին,
Ինչո՞ւ տխրեմ, ինչո՞ւ,
Ես նայում եմ երկինք,
Ու թևերս են աճում
Ծառի բարձր ճյուղքին:

— Իսկ եթե գա անձրև,
Դու ի՞նչ պիտի անես,
Դու դեռ թռչնակ անթև,
Անօգնական այդպես,
Դու ի՞նչ պիտի անես:

— Ես կուչ կգամ միայն,
Ես ոչինչ չեմ անի,
Տերևներով իր լայն
Ծառն ինձ կպաշտպանի:
Ես ոչինչ չեմ անի...

— Իսկ երբ գիշեր լինի,
Դու չե՞ս մրսի, թռչնա՛կ:
— Ես կքնեմ տաքուկ
Մորս թևերի տակ,
Երբ որ գիշեր լինի:

այլևս չպետք է փնտրի այն պատուհանը, որտեղից հնչում է ջութակի ձայնը, այլ պետք է լսի թավջութակին: Եվ պետք է մտքում ավելի լավ պահի թավջութակի ձայնը:

— Դու լավ տղա ես... — հենց այնպես ասաց ուղեկցուհին:

Տղան կարծես համաձայնվեց, բայց և հանկարծ կռչաց: Նրան թվաց, որ այդ ինքը չէ՝ մեծ, ծանր թավջութակի հետ անձրևի տակ քայլում, այլ մի ուրիշը: Իսկ այդ «ուրիշը» ոչ մի կապ չունի երաժշտական ուսումնարանի անմատչելի շենքի, նրա խորհրդավոր կյանքի, լուսավոր պատուհանների հետ, որոնցից ամեն մեկը իր սեփական ձայնն ունի: Ամեն ինչ կորավ, և ինքը այլևս չկա...

Քիչ հետո նա կանգ առավ. մեծ, սև պատյանով թավջութակը դրեց թաց ասֆալտին: Թավջութակը նմանվեց մի մողեսի՝ երկար ու փոքր գլխով:

Հետո նա բացականչեց՝ ցտեսություն և վազեց:

— Այդ ո՞ւր... Իսկ ցավջե՞րդը, — տղայի ետևից կանչեց կորուստից աղջիկը: Սակայն տղան չշրջվեց ու չպատասխանեց: Նա վազեց դեպի երաժշտական ուսումնարանի կողմը, ջութակի մոտ, իր նախկին տեղը:

Ռուս. թարգմ. ԱՎԹԱՆԴԻԼ ՓԱՇԱՅԱՆԻ

ՀԻՍՈՒՆԱՄՅԱ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ՝ ՄԵԿ ՕՐՈՒՄ

# Ծաղկաձորյան

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ

Հանդիպումն այնքան անակնկալ էր, որ մի պահ թվաց, թե տեսողական խաբկանք է: Ձորից ճոճչալով դանդաղորեն բարձրանում էր մի սայլակ, որին հետևում էին հնամաշ հագուստներով և կարմիր վզկապներով երկու տղա: Նրանք աշխուժորեն զրուցում էին և մերթընդմերթ ճիպոտով շտապեցնում իշուկին: Այդ տեսարանը այնքան անհամապատասխան էր Ծաղկաձորի ճամբարներից ստացածս տպավորություններին, որ ակամա կանգ առա: «Երևի պատմական թեմայով կինոնկար են նկարահանում մոտակայքում»,— մտածեցի ես: Տղաները մոտեցան, բարևեցին և նկատելով իմ շփոթմունքը՝ հարցրին.

— Արդյո՞ք կարող ենք օգնել: Որևէ բա՞ն է պատահել:

— Չգիտե՞ք որտեղ են «Գարուն» ճամբարի պիոներները,— ասացի ես:— Ծաղկաձորում ինձ ասացին, որ նրանք այս անտառում են:

— Ո՛չ, չգիտենք,— պատասխանեցին տղաները և իրար նայելով՝ ժպտացին:

— Դուք ո՞ր ճամբարից եք:

— «Խիզախների հովտից»:

— Մի՞թե այդպիսի ճամբար կա այստեղ,— զարմացա ես:— Առաջին անգամ եմ լսում:

— Եթե ուզում եք տեսնել՝ եկե՛ք մեզ հետ,— առաջարկեցին նրանք:— Մենք ջուր ենք տանում ճամբարի համար:

Չնայած «Գարուն» ճամբար պետք է գնայի, բայց հետաքրքրությունից մղված ընկերացա նրանց: Շուտով մենք մտերմացանք և իմացա ուղեկիցներիս անունները՝ Գագիկ և Հայկ:

— Ինչո՞ւ եք այդպես հագնըված: Մի՞թե նոր հագուստ չունեք,— հարցրի ես:

— Առայժմ չունենք,— ասաց Գագիկը,— բայց շուտով և՛ նոր հագուստներ կունենանք, և՛ ըսպորտային գործիքներ, և՛ անհրաժեշտ պիտույքներ: Ճամբարում գրադարան կկառուցենք, մարզահրապարակ, էլեկտրականություն կանցկացնենք:

— Սպասի՛ր, սպասի՛ր,— ընդհատեցի ես:— Ինչպե՞ս թե կունենաք, կկառուցեք: Չէ՞ որ այդ ամենը վաղուց պետք է որ ունենայիք: Չլինի՞ ինչ-որ բան շփոթում եք:

— Չենք շփոթում,— ասաց Հայկը:— Ամեն նոր գործի սկիզբը միշտ դժվար է լինում, բայց պատկոմները չեն վախենում դժվարություններից:

— Գուցե «պիոնե՞ր» եք ուզում ասել,— ուղղեցի ես:

— Ո՛չ, պատկոմ,— ասաց Գագիկն ու բացականչեց.— Ահա՛ մեր ճամբարը:

Արահետից քիչ հեռու, անտառի բացատում, երկու գունաթափ փոքրիկ վրաններ էին կանգնած: Փայտե անշուք դարպասի մոտ կանգնած հերթապահը արևահար դեմքով, երկար նիզակը ձեռքին մի տղա էր: Գագիկը և Հայկը մոտեցան, փոխանակեցին նշանաբանը և անցան ներս:

— Կներեք,— ասացին նըրանք:— Կողմնակի մարդկանց չի թույլատրվում ճամբար մտնել:

Ես սկսել էի ամեն ինչ հասկանալ: Չէի շտապում հեռանալ: Երկար մնացի այդտեղ: Տեսա, թե ինչպես են պատկոմները եռանդով մաքրում ճամբարի շըրջակայքը, նիզակներով ու սրերով վարժություններ կատարում, պըղընձե կաթսայով ճաշ եփում, զրուցում իրենց կարդացած գըրքերի ու կատարած գործերի մասին, հայտնում իրենց ցանկությունները ու երազանքները:

«Գարուն» ճամբարը հեշտությամբ գտա: Մատնողը ճամբարի փողային նվագախումբն էր, որ անտառը լցրել էր պիոներական աշխույժ քայլերգերով: Գունագեղ վրանները, պիոներների կապույտ ու երկնագույն զգեստները ներդաշնակորեն միահյուսվել էին անտառի կանաչին: Երեխաների մեծ մասը խաղում էր մարզահրապարակում: Մի ուրիշ խումբ գրադարանում կարդում էր նոր ստացված գրքերն ու թերթերը: Պիոներական սենյակում դրուժինայի խորհրդի նախագահ Գայանեն ու Աստղիկը դասավորում էին աշխարհի մի շարք երկրներից ստացած իրենց հասակակիցների նվերները, իսկ Արտակն ու Կարենը ստուգում էին ճամբարի բարձրախոսը: Այնքան շատ էին պիոներներն ու նրանց ըզբաղմունքը, որ անհնար էր մի քանի ժամում իմանալ բոլորի անունները ու հետևել բոլորի արածին: Երբ հարցրի «Խիզախների հովիտ» ճամբարի մասին, նրանք խուսափողաբար պատասխանե-



Նկ. ՆԻԿՈՂԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

ցին: Հրաժեշտ էի ուզում տալ՝ «Փարվանա» գնալու համար, բայց ճամբարի պետ Արկադի Ղուկասյանը խորհրդավոր ժպտալով, ասաց.

— Այս երեկո մնացե՛ք մեզ մոտ: Վաղը կգնաք «Փարվանա»: Կարծում եմ՝ չեք ափսոսա:

Պիոներական ճամբարում ժամանակը արագ է անցնում: Չզգացի, թե ինչպես վրա հասավ երեկոն: Ժամը ութին անտառից



լսվեց շեփորի կանչ. ճամբարի շեփորահարը պատասխանեց նրան: Քիչ անց համաչափ քայլերով երևաց «Խիզախների հովտի» պատկոմական ջոկատը: Տեղ հասնելով, ջոկատը զգաստ կանգնեց նույնպես զգաստ կանգնած «Գառնի» ճամբարի դրուժինայի դեմ:

— Ողջո՛ւյն համարձակ պիոներներին:

— Ողջո՛ւյն խիզախ պատկոմներին:

Այնուհետև իրար հաջորդեցին զեկույցները:

Այս հիանալի միջոցառումը նվիրված էր Ծաղկաձորում առաջին պիոներական ճամբարի հիմնադրման հիսունամյակին: Ինչպես արդեն կռահեցիք, երկու ճամբարների մասնակիցներն էլ նույն՝ «Գառնի» ճամբարի պիոներներն էին: Անցյալը վերականգնվել էր մանկավարժ Սեդա Պապյանի ղեկավարությամբ: Նրանք գյուղում որոնել ու գտել էին հին ամաններ, հագուստներ, կարդացել պատկոմների մասին գրքեր: «Խիզախների հովիտը» ձևավորելիս պիոներներին մեծ օգնություն էր ցույց տվել առաջին ճամբարականներից Վարդգես Բաբախանյանը, իսկ ժամանակակից ճամբարը՝ ջոկատավար Օնիկ Սահակյանը:

Հոբելյանական խարույկի ցոլքերի տակ գառնեցիները պատմում էին պիոներիայի անցած ուղու, կատարած նշանավոր գործերի մասին, հիշում հերոս պիոներներին:

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՄԱՐՏ

Կեսգիշերն անց էր, երբ ճամբարում հնչեց տագնապի ազդանշանը: Խաղաղ ննջասենյակները աղմուկով լցվեցին, բայց շուտով նորից լռություն տիրեց: Դրուժինան կազմ ու պատրաստ շարվել էր բակում:

— Հակառակորդը օգտվելով մեր զգոնության թուլացումից, հարձակում է գործել ճամբարի վրա և գերի վերցնելով Ավետիքին ու Վահանին՝ հեռացել,— ասաց շտաբի պետը:— Մենք սակայն կարողացանք իմանալ, թե որ կողմ են գնացել նրանք: Անհապաղ պետք է հետապնդել, ազատել մեր մարտիկներին և հակառակորդին գերի վերցնել: Հետախուզության կգնա առաջին ջոկատը: Երրորդ և չորրորդ ջոկատները աջ ու ձախ թևերով կաջակցեն նրան: Հետապնդումը պետք է լինի արագ և անաղմուկ: Հաղթանակի՜ է առաջադրանքը:

— Այո՛,— միաձայն պատասխանեց դրուժինան:

— Դրուժի՛նա, լսի՛ր հրամանը, առա՛ջ՝ դեպի հակառակորդը:

Ծառերի ստվերներից գիշերը ավելի էր սևացել: Անտառում մութ էր ու լուռ: Միայն երբեմն լսվում էր բուի միապաղաղ կռնչոցը կամ կոճղերի մոտ առկայծում էին լուսատտիկները: Առաջին ջոկատի մարտիկները զգուշորեն սողում էին թփերի արանքով և խոտերի խուլ խշշոցից կարելի էր գուշակել նրանց ներկայությունը: Մինչև անտառ նրանք եկել էին քայլելով և կուզեկուզ վազելով, բայց այժմ, ենթադրելով հակառակորդի մոտիկությունը, չէին կարող այդպես անել: Անփութությունը անհաջողության պատճառ կարող էր դառնալ: Տեղանքին ծանոթ լինելը օգնում էր արագ շարժվել: Հանկարծ Տիգրանը կանգ առավ և շշուկով ընկերներին մոտ կանչեց.

— Ուշադի՛ր լսեցեք: Կարծես ինչ-որ մեկը խոսում է:

Իսկապես, տղայի ձայն էր, բայց հեռավորության պատճառով անորոշ էր լսվում, դժվար էր բառերը զանազանել:

— Սպասեք այստե՛ղ: Ես կգնամ ստուգելու,— շշնջաց Տիգրանը:

Նա արագորեն անհետացավ խավարում: Տիգրանի բացակայությունը ժամեր թվաց, մինչդեռ նա վերադարձավ հազիվ քսան րոպե անց:

— Այնտեղ են Ավետիքն ու Վահանը,— ասաց Տիգրանը:— Նրանց երեք պահակ է հսկում: Պետք է միասին հարձակվենք և պահակներին անաղմուկ զինաթափ անենք: Նրանց հիմնական ջոկատը երևի հեռու չէ:

Հետախույզները շուտով Սոճիների պուրակ հասան: Լուսնի լույսի տակ կարելի էր ամեն ինչ զանազանել: Պարանով կապկըպված Ավետիքն ու Վահանը նստել

էին ծառի տակ, իսկ պահակները դանդաղ քայլում էին նրանց շուրջը: Կամացուկ կանչեց կկուն. այդ Տիգրանն էր հարձակման ազդանշան տալիս: Պահակները կասկածանքով նայեցին ձայնի ուղղությամբ, և այդ պահին նրանց շրջապատեցին հետախույզները: Պայքարը կարճ տևեց. պահակների բերանները փակեցին թաշկինակներով, կապկպեցին, և ազատեցին իրենց ընկերներին: Պետք էր հեռանալ: Բայց մի չնախատեսված դեպք պատահեց. պահակներից մեկը կարողացավ բերանն ազատել թաշկինակից և օգնություն կանչել: Արդեն ուշ էր հեռանալու համար: Ծառերի ետևից դուրս էին գալիս հակառակորդ ջոկատի մարտիկները: Նրանց խուճապի մատնելու համար՝ հետախույզները առաջինը գրոհի նետվեցին: Իրար գրկած մարտիկները թավալգլոր էին լինում, ոտքի կանգնում, ըմբշամարտի հնարքներ կատարում: Հետախույզները չէին ընկճվում, բայց չէին էլ կարողանում հաղթել թվով գերազանց հակառակորդին: Երբ արդեն հոգնած հետախույզները նահանջում էին, տեղ հասավ չորրորդ ջոկատը: Այդ Կորյունն էր աննկատ հեռացել մարտի դաշտից և լուրը տեղ հասցրել:

Քիչ անց երևաց նաև երրորդ ջոկատը: Հաղթանակը արդեն կասկած չէր հարուցում: Շտաբի պետը անվանականչ անցկացրեց և ասաց.

— Շնորհակալություն եմ հայտնում գիշերային մարտի բոլոր մասնակիցներին: Հակառակորդի ջոկատը ամբողջովին գերի է վերցված: Մենք ոչ մի կորուստ չունենք: Նորից շնորհակալություն: Խաղը ավարտված է:

Լուսաբացի առաջին շողերի հետ դրուժինան ճամբար վերադարձավ: Ուրախ էին բոլորը՝ և՛ հետախույզները, և՛ «հակառակորդ» երկրորդ ջոկատը:

Ռազմամարզական «Փայլակ» խաղի ծրագրով անցկացվող այս միջոցառումը կազմակերպվել էր «Ծիածան» ճամբարում: Պիոներները աշխատում էին ամոթով չմնալ իրենց շտաբի պետի՝ Գևորգ Շահինյանի առաջ, որը նախկին հետախույզ է և Հայրենական մեծ պատերազմում բազմաթիվ վտանգավոր առաջադրանքներ է կատարել: Նրա շնորհակալությունը նշանակում էր, որ պիոներները բարձր են պահել ճամբարի պատիվը:



## ՀԱՂԹՈՒՄ Է ՈՒԺԵՂԸ

Տերեշկովայի անվան ճամբարի վոլեյբոլի հրապարակում տղաների թիմը հանդիպում էր «Գառնուն», ճամբարի թիմին: Մինչև եզրափակիչ հասնելը «Վալենտինա Տերեշկովան» հաղթել էր «Սևան»-ին, «Տիեզերք»-ին, «Փարվանա»-ին, իսկ «Գառնուն»-ը մյուս փնջի հաղթողն էր: Խաղը հենց սկզբից էլ անզիջում էր. երկու թիմերն էլ ուզում էին չեմպիոն դառնալ: Իրար էին հաջորդում խաբուսիկ փոխանցումները, շեշտակի հարվածները: Բայց ակնհայտ էր «Վալենտինա Տերեշկովա» ճամբարի թիմի առավելությունը: Նրանք էլ հաղթեցին 2 : 0 հաշվով:

Ճամբարի պիոներական սենյակը կարծես սպորտային փոքրիկ թանգարան լիներ: Պատերին գովասանագրեր են, պատվոգրեր, մրցության տեսարաններով լուսանկարներ, սեղանի վրա՝ գավաթներ: Այդ ամենը պատմում էր տարբեր մարզաձևերից մրցանակային տեղեր գրավելու, աշխատասիրության ու հպարտության մասին: Անցած ամռան ամենանշանավոր իրադարձությունը հանրապետական ճամբարային սպարտակիադայում հաղթելն էր: Գովելին այն է, որ ճամբարում սպորտով զբաղվում էին բոլոր պիոներները: Ահա թե ինչու երեք հարյուր հոգի հանձնեցին ՊԱՊ համալիրի նորմաները:

Սպորտային կոփվածությունը օգնում էր ճամբարում գործող մյուս խմբակների աշխատանքներին մասնակցելու, որոնցից ամենասիրելին ու բազմաքանակը «Քաղաքացիական պաշտպանություն» խմբակն էր: Խմբակի հրամանատարն էր փոխգնդապետ Յոլյակ Սարգսյանը: Ճամբարում հնարավորություններ են ստեղծված տեսական գիտելիքները գործնականորեն ստուգելու: Տեղի էին ունենում հակագազերով մրցումներ, տուժածներին առաջին անհրաժեշտ օգնություն ցույց տալու ձևերի և վտանգից հուսալի պաշտպանվելու միջոցների փորձեր: Երեք ամսվա ընթացքում յոթանասունհինգ պիոներ արժանացան «Քաղաքացիական պաշտպանության գերազանցիկ» կրծքանշանի: Սանիտարական պոստերի ծաղկաձորյան մրցությունում ճամբարը գրավեց առաջին տեղը:

Վալենտինա Տերեշկովայի անվան ճամբարը միշտ ձգտում էր առաջավորների շարքում լինել, օրինակ վերցնել լավագույններից:

## ԱՐԵՎ ՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ

Նրանք հինգն էին. Գալյան, Իրան, Օլյան, Սերյոժան և Կոլյան:

# ՕՁԸ

Մեր գյուղը չորս կողմից շրջապատված է լեռներով ու անտառներով: Ավելի ճիշտ՝ գտնվում է լեռների ստորոտում, իսկ ավելի հրապուրիչ է դարձնում բարձր լեռներից գահավիժող գետը: Ամռանը կանաչում է ամբողջ ձորը և գյուղը դառնում է հրաշալի: Ամռանը, ամեն օր իջնում ենք գետափ ու ժամերով խաղում ենք այնտեղ: Մի օր էլ մեր կովը հիվանդացավ ու տանը մնաց: Տատիկս ինձ ուղարկեց գետափ՝ թարմ խոտի: Ես չէի վախենում մենակ գետափ գնալուց: Վերցրեցի մի պարան ու գնացի: Խշշում էր գետը, թռչունները երգում էին, բայց ավելի ուժգին լսվում էր գորտերի կռկռոցը: Գորտերն այնքան շատ էին, որ գետափի քարերը չէին երևում: Այնքան հանգիստ ու անհոգ էին նրանք, որ մի պահ ես նախանձեցի նրանց: Նստել էի մի քարի ու լսում էի այդ բազմազան ձայները: Հանկարծ ես սթափվեցի ու նայեցի երկնքին: Արևն արդեն բավականին թեքվել էր: Ես դեռ ոչինչ չէի արել: Սկսեցի արագ-արագ քաղել խոտը: Հանկարծ ձեռքիս տակ ինչ-որ փափկություն զգացի: Անմիջապես ձեռքս քաշեցի և, ի՞նչ տեսնեմ, ձեռքս դրել եմ մի մեծ օձի վրա: Սիրտս սկսեց ուժգին բաբախել: Վերցրեցի մի քար և ցանկացա խփել օձի գլխին: Այդ անվնաս արարածը հանգիստ սողում էր դեպի մոտակա քարը: Ես քարը ձեռքիցս գցեցի: Արագ կապեցի պարկը ու վազեցի տուն: Վախից ամեն րոպե ետ էի նայում, կարծում էի, թե օձը գալիս է ետևիցս: Երբ տուն հասա, ամեն ինչ պատմեցի տատիկիս: Նա բարի ժպտաց ու ասաց.

— Դու շատ ճիշտ ես վարվել, աղջի՛կս, որ չես սպանել նրան: Գուցե նա մայր էր: Եվ եթե դու սպանեիր նրան, նրա ձագերը որբ կմնային: Բոլոր օձերը չէ, որ թունավոր են: Թունավոր օձերը շատ քիչ են: Հետո, աղջի՛կս, օձերը օգտակար կենդանիներ են:

Իսկապես, ինչ լավ էր, որ ես չսպանեցի նրան: Ես այնպես գո՜հ էի ինձնից ու այնպես լա՜վ էի ինձ զգում:

*ՍԻԼՎԱ ՄԵԼՔՈՆՅԱՆ*

*Հրազդանի շրջան, գյուղ Սոլակ, 8-րդ դաս. աշ.*

---

*Ծաղկաձորի «Արշալույս» ճամբարն էին եկել Սիբիրից՝ Կեմերովոյի մարզի Նովոկուզնեցկ քաղաքից: Բոլորն էլ սովորում էին ութերորդ դասարանում:*

*— Ես շատ ուրախացա, երբ իմացա, որ ամռանը հանգստանալու եմ Ծաղկաձորում,— ասաց Սերյոժան:— Իհարկե, ես չգիտեի, թե ինչպիսին է այդպես դժվար արտասանվող անունով բնակավայրը, բայց Հայաստանի մասին շատ էի կարդացել ու լսել և գիտեի, որ մեր երկրի գեղեցիկ վայրերից է: Բացի այդ, ինձ գրավում էր «Արարատը»: Այժմ, Ծաղկաձորում հանգստանալուց, Երևան ու Սևան ճանապարհորդելուց հետո, համոզված եմ, որ, իրոք, Հայաստանը գեղեցիկ է: Ցավոք, չկարողացա ստադիոնում նայել «Արարատի» խաղը: Բայց ճամբար եկավ Արկադի Անդրեասյանը և մենք նրա հետ ֆուտբոլ խաղացինք:*

*— Սերյոժան ոչ միայն լավ ֆուտբոլիստ է, այլև լողորդ, մարմնամարզիկ, վազորդ,— ասաց Արամը:— Բազմամարտի գըծով նա Ծաղկաձորի չեմպիոնըն է:*

*— Միայն մեկ մրցությունում է նա պարտվում,— ծիծաղեց Կոլյան:*

*Մյուսները նույնպես ծիծաղեցին, հասկանալով, թե ինչ է նա ակնարկում: Ճամբար գալու առաջին օրը Սերյոժան և Կոլյան որոշել էին մրցել, թե ով ավելի շատ հայերեն բառեր կսովորի, կկարողանա հայերեն խոսել: Կոլյան ավելի ընդունակ գտնվեց: Նա ոչ միայն ավելի շատ հայերեն բառեր գիտեր, այլև հայկական երգեր ու պարեր էր կատարում:*

*— Մենք անչափ սիրեցինք Հայաստանի արևը,— ասում էր Իրան:— Այնքա՜ն ջերմ է, այնքա՜ն շռայլ: Մի գիշեր մենք ճամբարականներով Պիոներական սար ենք բարձրացել արևածագը դիտելու: Ի՜նչ հրաշալի էր: Կարծես հեքիաթ լիներ:*

*— Իսկ ինձ ավելի դուր է եկել կոմերիտմիությունը և պիոներական կազմակերպությունը Վ. Ի. Լենինի անունով կոչելու հիսունամյակի առթիվ կազմակերպված հրավառությունն ու ջահերթը,— ասում էր Օլյան:*

*Նրանք պատմելու շատ բան ունեին, և իրար լրացնելով պատմում էին. կոլտնտեսություններում և շինարարությունում աշխատելու, «Լավագույն գործերի օրվա», Օլիմպիական ավան այցելելու, «Նկարում են բոլորը» ցուցահանդեսի մասին: Ամենակարևորը, սակայն, այն ջերմությունն էր, որով նրա՛նք խոսում էին իրենց նոր ընկերների՝ հայ պիոներների մասին:*

* * *

*Մենք պատմեցինք Ծաղկաձորի չորս ճամբարների մասին: Նույնքան հետաքրքիր ու բովանդակալից անցան անցյալ տարվա ամառային արձակուրդները նաև Հանքավանի, Կիրովականի, Սևանի և Հայաստանի այլ վայրերում գտնվող պիոներական ճամբարներում: Համոզված ենք, որ նույնքան մեծ տպավորություններով հարստացած տուն կվերադառնան այս տարվա ճամբարականները:*



## ՀԱՄԵՍՏՈՒԹՅՈՒՆ

Անգլիացի գրող Բեռնարդ Շոուին նրա երկրպագու մի փոքրիկ աղջիկ նամակ է գրում և խնդրում թույլ տալ իր նվեր ստացած շանը կոչել «Շոու»:

Գրողը պատասխանում է.

— Իմ թանկագի՜ն բարեկամ, ես անչափ շոյված եմ ձեր առաջարկությամբ: Բայց դուք չե՞ք մոռացել հարցնել նաև ձեր շան համաձայնությունը:



## ՄԽԻԹԱՐԵՑ

Փարիզից Վարշավա թռչելու ժամանակ լեհ կինոդերասան Զբիգնև Ցիբուլսկին նկատում է, որ հարևան բազկաթոռում նստած ուղևորը վախից դողում է:

— Ինքնաթիռով թռչելը մեր օրերում դատարկ բան է: Մինչև իսկ ավտոմեքենան ավելի վտանգավոր է: Բարեկամներիցս մեկը ավտոմեքենայով գնալիս է լինում խճուղով և նրա գլխին ինքնաթիռ է ընկնում,— մխիթարում է Ցիբուլսկին:

# ԱՆՑՆՈՒՄ ԷԻՆ ՏԱՐԻՆԵՐԸ...

*ԱՐՏԱԿ ՌՈՍԿԱՆՑԱՆ*

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

Դյուրաշարժ, թեթև մարմինները դեպի իրեն ձգելու մենաշնորհը սաթին չմնաց: Շուտով պարզվեց, որ այդպիսի հատկությամբ օժտված նյութերի թիվը մեծ է: Նման նյութեր փորձարկելիս Գերմանիայի Մագդենբուրգ քաղաքի բուրգոմիստր Օտտո ֆոն Գերիկը ականատես եղավ մի տարօրինակ երևույթի:



Գունդը կենտրոնախույս մեքենայի վրա պտտելիս նա պատահաբար ափով ուզեց կասեցնել շարժումը: Եվ ի՜նչ. գնդի վրա ի հայտ եկան էլեկտրական լիցքեր:

Գերիկը պարմացավ: Փորձերը հաջորդեցին մեկը մյուսին: Գիտնականի հետաքրքրությունն աճում էր: Վերջապես, երբ գնդին մոտեցրեց մի թեթև փետուր, տեսավ, որ փետուրը նախ ձգվեց, ապա վանվեց և այսպես անվերջ:

Փորձը սկզբունքորեն շատ կարևոր էր. չէ՞ որ մինչ այդ հայտնի էր, որ թեթև և դյուրաշարժ մարմինները միայն ու միայն ձգվում են լիցքավորված մարմինների կողմից, իսկ ինչ վերաբերվում է վանվելուն, ապա դա արդեն նորություն էր:

Իհարկե, հայտնի էր, որ մագնիսների նույնանուն բևեռները իրար վանում են, իսկ տարանունները՝ ձգում: Բայց, որ լիցքավորված մարմինը կարող էր ձգել ու վանել միևնույն թեթև մարմինին, դա արդեն խիստ տարօրինակ էր:

Գերիկի փորձը փաստացի առաջին ապդն էր, որ հնարավորություն էր ընձեռնում ֆիզիկայով զբաղվող գիտնականներին մտածելու նաև լիցքերի տարանունության և նույնանունության մասին:

Գերիկի այդ կարևոր հայտնագործությանը հաջորդեց մեկ ուրիշը. գնդերի լիցքավորման պահին նա լսեց կարճատև ճայթյուն և տեսավ թույլ առկայծում:

Ֆիզիկան հարստացավ մի նոր գաղափարով՝ հայտնի դարձավ լիցքերի պարպման երևույթը: Այո՛, հասկացությունն արդեն առկա էր և պետք էր տալ միայն տեսական հիմնավորում:

Գերիկը, իհարկե, չկարողացավ հիմնավորել, քանի որ էլեկտրականությունը ապրում էր իր մանկությունը և մեկը մյուսից բխող տվյալները դեռևս քիչ էին:

Ավելին. Գերիկը իր մտածողությամբ փորձագետ էր և ոչ տեսա-



բան: Բացի դրանից, այդ շրջանում նա արդեն վաթսունն անց ծերունի էր և իր ամբողջ կյանքում ֆիզիկային նայել էր հարևանցիորեն: Փաստորեն նա սիրող ֆիզիկոս էր, նրա զբաղմունքի առարկան ֆիզիկան չէր:

Ծնվել է 1602-ին Մագդենբուրգյան հոգևորականի ընտանիքում: Սովորել է նախ Լայպցիգում, ապա՝ Ենայում, զբաղվել իրավա-

քանությամբ: Այնուհետև ուղևորվել է Հոլանդիա, Լեյդեն, հետաքրքրվել մաթեմատիկայով, ֆիզիկայով և ժամանակի գրեթե բոլոր բնական ու ճշգրիտ գիտություններով: Ճանապարհորդել է Ֆրանսիա, Անգլիա, լսել և կարդացել այդ երկրների գիտնականներին և արվեստագետներին: Քսանհինգ տարեկանում վերադարձել է իր հայրենի Մագդենբուրգ և գրավել մի շարք պատասխանատու պաշտոններ: Քառասունչորս տարեկանում դարձել է բուրգոմիստր: Մինչ այդ ստեղծված պայմանները նրան թույլ չէին տվել զբաղվելու գիտությամբ: Հիսուն տարեկան Գերիկը «Մագդենբուրգյան կիսագնդերի» առեղծվածով՝ հայտնի դարձավ ողջ աշխարհին: (Ըստ այդ առեղծվածի, երկու դատարկ կիսագնդեր իրար միացնելու դեպքում տասը ձի է պետք նրանց իրարից պոկելու համար. ինչպիսի՜ ուժ: Իհարկե, հետագայում այն դադարեց առեղծված լինելուց, իսկ մեր օրերում այդ երևույթը կարող է բացատրել վեցերորդ դասարանի ֆիզիկայի դասընթացին ծանոթ յուրաքանչյուր աշակերտ):

Յոթանասուն տարեկանում Գերիկն առանձին գրքով լույս աշխարհ հանեց մեկ տասնամյակում կատարած իր փորձերի արդյունքները: Գիրքը լայն տարածում գտավ Եվրոպայում: Օգտվելով գրքում նկարագրված փորձերից, հետազոտողներն եկան նոր եզրահանգումների, հաստատվեցին էլեկտրականության նոր հասկացություններ:

Գերիկի գիրքը դարձավ ֆիզիկոսների սեղանի զարդը և տասնամյակներ շարունակ չկորցրեց իր հետաքրքրությունը: Այդ է վկայում, օրինակ, 1745-ին Լեյդենում Գերիկի գրքում նկարագրված եղանակով կատարված փորձը: Փորձի հեղինակը Պիտեր վան Մուշենբրեկի աշակերտ Քյունեուսն էր: Նա որոշեց լիցքավորել ջուրը և կենտրոնախույս մեքենայի («Գերիկի մեքենա») վրա պտտվող գունդը շղթայիկի օգնությամբ միացրեց լայնեզր շշի մեջ լցված ջրին: Երբ լիցքավորումն ավարտվեց, Քյունեուսը փորձեց ձեռքով շշից դուրս հանել շղթայիկը: Եվ ի՜նչ... էլեկտրական հարվածն այնքան ուժեղ էր, որ Քյունեուսը հազիվ փրկվեց մահից:



Նրա ուսուցիչը՝ պրոֆեսոր Մուշենբրեկը, որ ներկա էր այդ զարմանահրաշ փորձին, այսպես գրեց այդ մասին. «Ուզում եմ տեղեկացնել ձեզ սարսափելի փորձի մասին, որը ոչ մի դեպքում խորհուրդ չեմ տա կրկնել որևէ մեկին»:

Պարզվեց, որ նման շշերում կարող են կուտակվել մեծ քանա-



կությամբ էլեկտրական լիցքեր: Այսպես հայտնագործվեց հետագայում մեծ հռչակ ստացած «լեյդենյան շիշը»՝ պարզ կուտակիչը (կոնդենսատոր):

Լեյդենյան շշի առեղծվածը տարածվեց ողջ Եվրոպայում և դեռ նոր միայն լուսավորության ուղի բռնած Ամերիկայում: Լաբորատորիաներում և ակնվականական սրահներում կրկնում և ցուցադրում էին այդ փորձը և ամենուր թե՛ մասնակիցներին, թե՛ դիտողներին զարմանք ու հաճույք էր պատճառում այն:

Ֆրանսիայի մայրաքաղաքը, ինչպես և սպասվում էր, դարձավ նման փորձերի հավաքատեղի, յոթ հարյուր փարիզյան կղերականներ իրար ձեռք բռնած անցկացրին այդ փորձը: Երբ նրանցից



# ՄԵՂՈՒՆ ՈՒ ՃԱՆՃԸ

ԳԵՎՈՐԳ ՋԱՐԵՆՑ

Անբան ճանճը թզզաց, բզզաց,
Մեղրաճանճին այսպես ասաց.
— Թևեր ունես,
Ես էլ ունեմ,
Ոտքեր ունես,
Ես էլ ունեմ,
Մի քիթ ունես,
Ունեմ ես էլ,
Ինչ որ չունես,
Չունեմ ես էլ:
Էլ քեզ ինչո՞ւ
Պիտի հարգեն,
Ինձ թշնամու
Դասին հերքեն:



Չե՞ս հավատում, նայի՛ր պատին,
Այնտեղ կախած պլակատին,
Կարծես գծել են հետքը՝
Մեծացրել են իմ նկարը,
Տակն էլ գրել են առանձին.
«Սպանեցեք չարագործին»:
— Ա՜յ թևավոր,
Ա՜յ ահավոր,—
Ասաց մեղուն,—
Ես օրնիբուն,
Քուն թե արթուն,
Միշտ բարիք եմ
Տալիս մարդուն,
Իսկ դո՞ւ, թշվա՛ռ,
Որտեղ որ մի կեղտ ես գտնում,
Գլխով-ոտքով մեջն ես մտնում:
Եվ հետո էլ այդպես կեղտոտ,
Շտապում ես դու մարդկանց մոտ,
Տարածում ես ցավ ու չարիք,
Քեզնից ո՞վ է տեսել բարիք.
Ուրեմն այսպես,
Ճա՛նճ աներես,
Ինչ ունեմ ես,
Այն դու չունես:




առաջինը իր ձեռքը մտցրեց արդեն էլեկտրականացած ջրի մեջ, բոլորը միաբերան ճիչ արձակեցին, խիստ վախեցան և գունաթափվեցին:

Վերսալում թագավորի ներկայությամբ նման փորձ անցկացրին հարյուր ութսուն հրացանակիրներ: Նույնիսկ գվարդիական կարգ ու կանոնը անզոր գտնվեց լեյդենյան շշի առաջ. հարվածն վգացին բոլորը, տեսարանը ծիծաղելի էր, տարօրինակ ձայների և շարժումների ալիքը ափից հանել էին թագավորին, նա քրքջում էր:

Լեյդենյան շիշը գնալով կատարելագործվում էր. յուրաքանչյուր նոր փորձարար ձգտում էր ավելի մեծ հզորության հասցնել այն: Նրանցից շատերին հաջողվեց այնքան կատարելագործել լեյդենյան շիշը, որ արդեն հնարավոր դարձավ նրա օգնությամբ ստանալ էլեկտրական մեծ չափերի հասնող առկայծումներ:

Փորձերն ստացան մասսայական բնույթ. փորձում էին գրեթե բոլորը՝ ֆիզիկոսներ և ոչ ֆիզիկոսներ, պալատականներ, վանականներ, գյուղացիներ, բանվորներ, ուսանողներ, աշակերտներ, բոլո՛րը, բոլո՛րը:

Փորձերը ցուցադրվում էին թատրոններում, կրկեսներում, ուր պատահեր:

Ընդհանուր հետաքրքրությունը մի տեսակ բթացրել էր երևույթի ներքին էությունն վգալու ընդունակությունը. բոլորը հրճվում էին միայն արտաքին փայլով: Եվ ի վարմանս բոլորի, չգտնվեց մեկը, որ կարողանար բացատրել լեյդենյան շշի առեղծվածը:

Եվ այդպես անցնում էին տարիները...

Ցուցադրողները ցուցադրում էին, հանդիսատեսները հրճվում... Իսկ թե ո՛ւմ էր վիճակված վգալու լեյդենյան շշի «խորությունը», այդպիսին չգտնվեց ո՛չ Փարիզում, ո՛չ Լեյդենում, ո՛չ Ժնևում և ո՛չ էլ Լոնդոնում:

Իհարկե, կասկածից վեր էր, որ վաղ թե ուշ գտնվելու էր մեկը, որի վրա այդ փորձերը ավելի խորըն էին ազդելու, քան այն հազարների, որ մասնակից ու ականատես էին եղել մինչ այդ:

Եվ ահա հեռավոր Ամերիկայում գտնվեց այդպիսի մեկը, որի անունն էր Բենջամեն Ֆրանկլին:





# ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

**1950** թվականի հուլիսյան մի առավոտ Պետհրատի մանկա-պատանեկան գրականության խմբագրություն մտավ միջահասակ, թիկնեղ մի մարդ՝ հնամաշ պորտֆելը ձեռքին: Դիմագծերը խոշոր էին, կոպիտգեղջկական, շարժումները փոքր-ինչ վեհերոտ, անհամարձակ: «Ես ձեզ համար գիրք եմ գրել, տեսեք, թե որ բանի նման է...» Եվ, պորտֆելից հանելով թերթի մեջ ծրարած ձեռագիրը, դրեց սեղանին ու գնաց: Ծանոթացանք ձեռագրին: «Բանի նման էր»: Պլանավորեցինք այն ու լույս ընծայեցինք 1951 թվականին: Գիրքը կոչվում էր «Անվանի աշխարհագրագետ ճանապարհորդներ»: Հեղինակը հետաքրքրաշարժ ձևով պատմում էր Կոլումբոսի, Վասկո դա Գամայի, Մագելանի և ուրիշ նշանավոր ճանապարհորդների մասին: Գիրքը արժանացավ պատանի ընթերցողների ջերմ ընդունելությանը: Մամուլը դրվատանքի խոսքեր ասաց:

Այսպես սկսվեց աշխարհագրագետ Կամսար Ավետիսյանի մուտքը մանկական գրականության ասպարեզը: Անցած երկու և կես տասնամյակների ընթացքում Կամսար Ավետիսյանը պատանի ընթերցողի գրադարանը հարստացրել է մեկ տասնյակից ավելի գիտա-հանրամատչելի գրքերով. «Ինչ է պատմում քարտեզը», «Տոթակեզ աշխարհամաս», «Արևելքի մարգարիտը», «Իմաստուն խոսքերի աշխարհում», «Աշխարհագրական անունների բացատրական բառարան», «Երևանի պատմությունը անունների մեջ»—ահա միայն մի մասը այն գրքերի, որ Ավետիսյանը դրել է

ընթերցողի սեղանին: Ինչպես տեսնում ենք, ընդգրկումը բավական մեծ է, թեմաները՝ բազմազան: Այդպիսի գրքեր գրելու համար ոչ միայն շնորհք է անհրաժեշտ, այլև փաստերի վիթխարի կուտակում, որ մեր հեղինակն սկսել էր դեռևս աշակերտական տարիներից:

«Տարվա համարյա կեսը անց էի կացնում դպրոցում, ղեկավարում էի ուսանողների պրակտիկան աշխարհագրության գծով,— ասում է նա,— այստեղից էլ իմ մեջ ծագեց օգնել դպրոցին նաև գրելով»: Ահա այսպես ծնվեցին վերն հիշատակված գրքերը:

Ո՞րն է այդ գրքերի հիմնական արժանիքը: Գիտելիքների այն անսպառ պաշարը, որ հեղինակը շռայլորեն փռում է պատանի ընթերցողների առաջ: Մենք հեղինակի հետ անցնում ենք երկրե-երկիր, լողում ծովերով, օվկիանոսներով, գետերով ու լճերով, տեսնում երկրագնդի բուսական ու կենդանական աշխարհը, ծանոթանում ազգերին, ցեղերին ու ցեղախմբերին, նրանց ստեղծած նյութական ու հոգևոր արժեքներին:

Կամսար Ավետիսյանը մեծ սեր ունի նաև արվեստի նկատմամբ, ոչ միայն սեր: «Հրաշքների աշխարհում» գիրքը ամբողջությամբ նվիրված է արվեստի ստեղծագործություններին: Այստեղ սիրով նկարագրված են աշխարհի «յոթ հրաշալիքները», ինչպես և «ութերորդ հրաշալիքները»— եգիպտական սֆինքսը, Նեֆերտիտին, Աջանտայի և Էլլորայի ժայռակերտ կոթողները, Չինական մեծ պարիսպը, Լաոկոոնի արձանախումբը, Պիզայի թեք աշտարակը և այլն, և այլն: Այսպիսով, Ավետիսյանի աշխատությունները, գիտելիքներից բացի, գեղեցիկի ճաշակ են պատվաստում պատանի ընթերցողներին, օգնում ավելի խորն ըմբռնելու արվեստի նշանավոր ստեղծագործությունները:

«Աշխարհագրագետ» հասկացողությունը սերտորեն կապված է շրջելու, ճանապարհորդելու հետ: Կամսար Ավետիսյանը շատ է ճամփորդել: Բոլոր այն երկրներում, ուր եղել է՝ գիտնական-աշխարհագրագետի քննախույզ, ագահ աչքերով նա դիտել ու զննել է մարդկանց ու նրանց ապրելակերպը, աշխատել կենդանի իրականությամբ ստուգել ու ճշգրտել այդ երկրների մասին իր իմացածն ու կարդացածը: Հայրենիք վերադառնալով, նա իր տպավորությունները կիսել է դպրոցականների հետ, ելույթներ ունեցել ռադիոյով:

Կամսար Ավետիսյանը իր մեղվաջան աշխատասիրությամբ-օրինակ կարող է ծառայել բոլոր դպրոցականների, և ոչ միայն դպրոցականների, համար: Վերին աստիճանի ուսանելի է այն անմնացորդ նվիրումը, որով նա սկսած աշակերտական նստարանից՝ ծառայել ու ծառայում է ընտրած գիտությանը: «Զարմանալիորեն շատ եմ սիրել ու սիրում եմ այդ հրաշք-գիտությունը,— գրում է Ավետիսյանը:— Եվ եթե ինձ բախտ վիճակվեր նորից սկսել ուսումս, ապա կսկսեի աշխարհագրությունից»:

Կամսար Ավետիսյանը «Պիոներ»-ի ընթերցողների սիրելի հեղինակներից է, որի աշխարհագրական զրույցները կարդացվում են մեծ հափշտակությամբ և շատ բան են սովորեցնում նրանց:

Լրացավ սիրելի աշխարհագրագետի ծննդյան 70-ամյակը: Քաջառողջություն մեր սիրելի գիտնականին և ստեղծագործական նորանոր հաջողություններ՝ հուրախություն իր ընթերցողների:



# ՎԻԿՏՈՐԻԱ ՋՐՎԵԺԸ

*Զամբիայի և Հարավային Ռոդեզիայի սահմանում, Զամբեզի գետի վրա գտնվում է բնության ուշագրավ ստեղծագործություններից մեկը՝ Վիկտորիա ջրվեժը, որի հայտնագործումը կապված է անգլիացի նշանավոր աշխարհագրագետ-ճանապարհորդ Դավիթ Լիվինգստոնի անվան հետ:*

*Աֆրիկայի այս խոշորագույն և ջրառատ գետը, որի երկարությունն է 2660 կիլոմետր, հոսում է Հարավային Աֆրիկայով, արևմուտքից արևելք, և թափվում Մոզամբիկի նեղուցը: Ի դեպ, Զամբեզի անունը տեղական լեզվով նշանակում է «մեծ գետ»: 1855 թվականի ճանապարհորդության ընթացքում Զամբեզի գետի վրա Լիվինգստոնը հայտնաբերում է մի հոյակապ ջրվեժ, որը ի պատիվ անգլիական թագուհու՝ անվանում է Վիկտորիա:*

*Զամբեզի գետը ճանապարհին հանդիպելով դարավանդի՝ գահավիժում է 120 մետր բարձունքից անդունդ և առաջացնում մի վիթխարի ջրվեժ: Լայնությունը 1800 մետր է: Ջրի ծախսը մեկ վայրկյանում հավասար է 1400 խորանարդ մետրի:*

# ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԾԱՌԸ

Աֆրիկայի Փղոսկրե Ափ երկրում բուսաբան Ֆրենսիս Ալլեն մի վարմանահրաշ բույս է գտել, որի աճը տեղի է ունենում մաթեմատիկական օրինաչափությունների համաձայն:

Այս բույսի գիտական անունն է շումաննիոֆիթոն պրոբլեմատիկում: «Պրոբլեմատիկում» տեսակային անվանումը, որը նշանակում է «խնդիր», ինքնըստինքյան ցույց է տալիս, որ բույսը «մաթեմատիկական է»:

Շումաննիոֆիթոնը պատկանում է տորոնագգիների ընտանիքին: Բույսը սովորաբար ունենում է 6—12 մետր բարձրություն և չափազանց խոշոր տերևներ, որոնք մաթեմատիկական ճշտությամբ դասավորված են խմբերով, յուրաքանչյուր ճյուղի վրա՝ 3-ական հատ:

Այդ վարմանահրաշ ծառի աճման առանձնահատկությունները կարելի է արտահայտել հետևյալ բանաձևով.

$$N = (y + 12) + 4$$

Բանաձևը մաթեմատիկական ճշտությամբ ցույց է տալիս ծառի տերևների թիվը: y-ը ցույց է տալիս ծառի տարիքը: Եթե լուծեք այս բանաձևը, ապա մեծ ճշտությամբ կիմանաք, թե ընդամենը քանի տերև կա տվյալ ծառի վրա:

Իսկ ինչո՞ւ է դա այդպես: Ծառի վրա յուրաքանչյուր տերևահանգույցից դուրս են գալիս չորս ընձյուղներ, յուրաքանչյուրը մեկ մետր երկարությամբ: Այսպիսով, ամեն հանգույցի 4 ընձյուղները միասին կրում են 12 տերևներ: Քանի դեռ ծառը չի հասել իր առավելագույն մեծությանը, դրանք ամեն տարի արձակում են 4-ական ընձյուղներ: Բանաձևի վերջում 4 թվանշանը ավելացվում է, քանի որ ծառի գագաթնային ընձյուղը պսակված է 4 տերևներով: Հաջորդ տարի այդ տերևները վերափոխվում են չորս ընձյուղների, իսկ գագաթին առաջանում են չորս նոր տերևներ:

Գոյություն ունեն շումաննիոֆիթոնի երկու տեսակներ՝ պրոբլեմատիկում և մագնիֆիկում: Վերջինիս տերևները երկու անգամ ավելի խոշոր են, քան առաջինինը: Մաթեմատիկական բանաձևը երկու տեսակի համար էլ կարելի է օգտագործել: Իրենց վարքով մաթեմատիկական օրենքներին ենթարկվող բույսերը երկրագնդի վրա բավական շատ են:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*Կենսաբանական գիտությունների դոկտոր*

## «ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՄԵԿ ՕՐԸ՝ ԲԱՄ-Ի՛Ն»

Հանրապետության դպրոցականները անմիջական մասնակցություն չեն կարող ունենալ Դարի կառույցի շինարարությանը, բայց իրենց հնարավորությունների սահմաններում նպաստում են մայրուղու շինարարությանը: Պիոներական դրուժինաները ծանրոցներ, նվերներ են ուղարկում կառույցի տարբեր տեղամասերում աշխատող շինարարներին: Իսկ Երևանի Մաքսիմ Գորկու անվան դպրոցի կոմերիտական կազմակերպությունը և պիոներական դրուժինան ուսումնա-



*ա. ծառի սխեման բ. ցողունի սխեման (տերևադասավորություն)*

---

*Լիվինգստոն քաղաքից արդեն զգացվում է ջրվեժի պատկառազդու շունչը: Աստիճանաբար աճող դղրդյունը վկայում է, որ Վիկտորիան մոտ է: Ջրվեժի աղմուկը հիշեցնում է ծովի ալեբախություն: Ձայնը լսվում է 15 կիլոմետր հեռավորության վրա: Ջրվեժի հմայքը մեծ է հատկապես արևածագին, երբ արևի ճառագայթները բեկվելով ջրի շղարշի տակ՝ ստեղծում են ծիածան: Երբ անցնում է քամին, ծիածանը անհետանում է, իսկ ջրի փոշին տարվում է մի քանի կիլոմետր և թափվում շրջապատում անձրևի ձևով:*

*«Փորձել ջրվեժը բառերով նկարագրել՝ անհուսալի զբաղմունք է: Նույնիսկ ամենամեծ նկարիչը մի քանի պեյզաժներ նկարելով, այդ հիասքանչ տեսարանի միայն թույլ արտացոլումը կարող է տալ»,— գրել է ականատեսներից մեկը:*

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*
*Աշխարհագրագետ*

## ԴՊՐՈՑՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

*Ձեր գյուղի, շրջանի ու քաղաքի դպրոցներում, արտադպրոցական հիմնարկներում դուք մասնակցում եք հետաքրքիր միջոցառումների, աշխատանքների ու նոր շարժումների։ Երբեմն էլ ինքներդ եք նման գործերի հեղինակ դառնում։ Գրե՛ք մեզ այդ ամենի մասին։ Առավել ուշագրավ թղթակցությունները տեղ կգտնեն ամսագրի էջերում։*

կան տարվա առաջին կիսամյակում որոշեցին նաև դրամական օգնություն ցույց տալ կառույցին:

Այդ նպատակով ծնվեց «Աշխատանքային մեկ օրը՝ ԲԱՄ-ին» նշանաբանը: Որոշումն ընդունելու հաջորդ օրը նրանք երեք տոննա թղթի մակուլատուրա հավաքեցին: Իսկ մեկ շաբաթ անց արդեն մրցություն սահմանեցին դասարանների միջև՝ թղթի մակուլատուրա և մետաղի ջարդոն հավաքելու համար: Վեցերորդ Ա դասարանը բոլորից շատ՝ 1,5 տոննա մետաղի ջարդոն հավաքեց և շահեց մրցությունը:

Այժմ դպրոցի աշակերտները ամսվա ընթացքում մի քանի օր աշխատում են այդ նշանաբանով և ստացված դրամական միջոցները փոխանցում են մայրուղու շինարարությանը:

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԸ՝ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻՆ

Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի դպրոցականները մեծ հետաքրքրություն են ցուցաբերում տեխնիկական գիտությունների նկատմամբ: Նրանք բարեկամական սերտ կապերի մեջ են շրջանի տարբեր գիտահետազոտական ինստիտուտների գիտաշխատողների հետ: Շրջանում գործող 120 արտադասարանական խմբակների պարապմունքները հիմնականում անցկացնում են այդ ինստիտուտների երիտասարդ գիտաշխատողները:

Նրանք խմբակներին մասնակցող դպրոցականների համար հաճախակի կազմակերպում են քիմիայի, ֆիզիկայի, մաթեմատիկայի և այլ առարկաների գծով օլիմպիադաներ: Նման պարապմունքներն ու օլիմպիադաները մեծ նշանակություն ունեն հատկապես ավարտական դասարաններում սովորող աշակերտների համար և օգնում են նրանց՝ մասնագիտության ընտրության, գիտելիքների հարուստ պաշար ձեռք բերելու հարցում:

## ԲԱՌԱԽԱՂ

Դաժան գեներալ-նահանգապետ Տրեպովի դեմ մահափորձ կատարելու համար ռուս հեղափոխական Վերա Զասուլիչին դատում են: Դատավարության ժամանակ իբրև պաշտպան հանդես է գալիս հանրահայտ իրավաբան Ա. Ֆ. Կոնին:

Նրա համարձակ պաշտպանական ճառից հետո, Զասուլիչի նկատմամբ դատարանը արդարացման վճիռ է կայացնում:

Դատավարությունից հետո, շատ չանցած, մի աշխարհիկ հավաքույթի ժամանակ, մի շատ մեծ իշխանուհի, տեսնելով Կոնիին, բացականչում է.

— Ա՜, մեր մեջ է «կարմիր դատախազը»:

— Այո՛, ձե՛րդ մեծություն, ես չեմ կորցրել կարմրելու ընդունակությունը,— վրա է բերում պաշտպանը:



## ԱՄԵՆ ՄԵԿԸ ՄԻ ԲԱՆ Է ՓՈԽՈՒՄ

Երբ ամերիկյան հայտնի պետական գործիչ Ջեֆերսոնին կշտամբեցին, որ նա հանրապետականների կուսակցությունից անցավ դեմոկրատականների կուսակցության մեջ (որն այդ ժամանակ ավելի առաջադիմական էր), Ջեֆերսոնը պատասխանեց.

— Ամեն մեկը մի բան է փոխում, մեկը փոխում է համոզմունքները, ուրիշները պահպանում կուսակցությունը, ես նախընտրեցի փոխել կուսակցությունը, որպեսզի պահպանեմ համոզմունքներս:



# ԱՌԱՋԻՆ ԿՐՈՍՎՈՐԴ ՀՆԱՐՈՂԸ

*Տ. ԱՈՒԵՐԲԱԽ*

Մի անգամ Քեյփթաունի թերթերից մեկի գլխավոր խմբագիրը տեղական բանտից մի նամակ ստացավ: Ծրարի վրա պատկերված էր ինչ-որ անհասկանալի քառակուսիներ ու տառեր, իսկ նամակում գրված էր. «Հարգելի՛ պարոն, գտնվելով բանտում, ես հնարել եմ մի նոր խաղ, որը անվանում եմ կրոսվորդ (խաչբառ): Հարմար չե՞ք գտնի, արդյոք, տպագրել այն ձեր թերթում»:

Սկզբում խմբագիրը մտածեց, որ դա խելագարի կառանցանք է, և ծիծաղելով՝ ծրարը դրեց գրպանը: Իսկ երեկոյան ակումբում, հիշելով գրպանի նամակը, ցույց տվեց ընկերներին: Քիչ անց բոլորը նստել էին տարօրինակ ծրարի շուրջը և լուծելու համար հարմար բառեր էին որոնում: Երբ ամեն ինչ համընկավ, լուծողները երեխայի նման ուրախացել էին:

Հաջորդ օրը թերթի խմբագիրը գնաց բանտ և ծանոթացավ նամակի հեղինակի՝ Վիկտոր Օրվելի հետ, որը ավտովթար կատարելու համար դատապարտված էր մի քանի տարվա բանտարկության:

Հարկադրական աշխատանքից հետո, ազատ ժամերին նա հնարել է այդ կրոսվորդը, իսկ բանտապետը մտահղացումը համարելով հետաքրքիր, առաջարկել է ուղարկել խմբագրություն:

Թերթի ընթերցողները հիացած էին առաջադրված ժամանցով, և Օրվելը նոր պատվերներ ստացավ:

Շուտով կրոսվորդներ երևացին աշխարհի շատ թերթերի էջերում:

Բանտից ազատվելուց հետո, Օրվելը շուտով մահացավ, և այսօր շատ քչերին է հայտնի առաջին կրոսվորդ հնարողի անունը:

*Թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ*

# ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

## «50»

Գտնելով այս խաչբառի հարցերի պատասխանները և լրացնելով ուղղահայաց ուղղություններով, գծագրի վերին մասում բերված երկանիշ և եռանիշ թվերը փոխարինեք համապատասխան տառերով, իմանալով, որ երկանիշ թվի առաջին, իսկ եռանիշ թվի առաջին երկու նիշերը ցույց են տալիս խաչբառի հարցի համարը, իսկ վերջին նիշերը՝ պատասխանի տվյալ տառը: Ճիշտ կատարելու դեպքում, կկարդաք հռչակավոր պիոներական ճամբարի անունը, որի հիմնադրման 50 տարին լրանում է այս ամսին: Վերին շրջանակներում գտնվող տառերով ձախից աջ կկարդաք Սովետական Միության հերոսի կոչման արժանացած երկու պիոների ազգանունները, իսկ ներքևի շրջանակներում գտնվող տառերով կկարդաք այժմ գործող պիոներական երթի անվանումը:

1. Առաջին պիոներների անվանումը Հայաստանում: 2. Մանկական կոմունիստական կազմակերպության անդամ: 3. «Խարույկով խարկվենք» երգի հեղինակը: 4. Սպորտային մրցումների սկիզբը: 5. Սովետականականավոր մանկագիր: 6. Պիոներական տուրիստական միջոցառումներում օգտագործվող գույք: 7. Պիոներ, Սովետական Միության հերոս: 8. Պիոներական հանդիսավոր արարողություն: 9. Տիեզերագնաց-օդաչու, Էռնստ Թելմանի անվան պիոներական կազմակերպության անդամ: 10. «Զոյա» պոեմի հեղինակը: 11. ԳԴՀ-ի պիոներների վզկապի գույնը: 12. Պիոներական ճամբար՝ Ծաղկաձորում: 13. Պիոներական միջոցառում: 14. Հոկտեմբերիկի կրծքանշան: 15. Պիոներական խորհրդանիշ: 16. Վրացական մանկական ամսագիր: 17. Պիոներական խումբ: 18. Պիոներական հանդիսավոր երթ: 19. Հայ գրող, «Արևը» պատմվածքի հեղինակը: 20. «Կաշվե գնդակ» մրցությունում հաղթած թիմ:

## ՊԱՏԱՍԽԱՆ

«ՊԻՈՆԵՐ» № 5







Կազմեց ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ

Լույս է տեսնում 1928 թվականից

№ 7 Հուլիս 1975 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05619: Պատվեր 1454: Տպաքանակ՝ 79500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/VI 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

«Ելի՛ր, երկի՛ր իմ անծայրածիր» մրցույթի հաղթողները



ԱՂԱՍԻՆՅԱՆ ԳՈՀԱՐ
Երևան, 5-րդ դաս. աշ.



ԿԱՐԱԽԱՆՅԱՆ ԳՐԻԳՈՐ, 9 տ.
Հոկտեմբերյան



ՀՈՎԱԿԻՄՅԱՆ ՎԱՐԴԱՆ, 13 տ.
գյուղ Բջնի



ՊԵՏՐՈՍՅԱՆ ՍԱԼԲԻ, 13 տ.
գյուղ Բջնի



ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԳՈՒՐԳԵՆ, 11 տ.



ՊԵՏՐՈՍՅԱՆ ՀՐԱՉԻԿ, 13 տ.
գյուղ Բջնի